Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ







№ 11 ՀՈՒՆԻՍ 1955

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին: Հեռախոս 2—52—78:*



### ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

# ԾԱՆՐ ԻՆԴՈՒՍՏՐԻԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀԻՄՔԵՐԻ ՀԻՄՔՆ Է.

Սոցիալիստական հասարակության զարգացման բոլոր էտապներում Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը միշտ էլ առանձնահատուկ ուշադրություն են նվիրել ծանր ինդուստրիայի զարգացմանը: Դա բացատրվում է նրանով, որ ծանր ինդուստրիան հանդիսանում է ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի զարգացման հիմքերի հիմքը: Առանց զարգացած ծանր ինդուստրիայի երբեք հնարավոր չի լինի ապահովել ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի, այդ թվում նաև թեթև ու սննդի արդյունաբերության, ինչպես նաև գյուղատնտեսության արտադրության հետագա անշեղ վերելքը:







Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայից հետո մենք ժառանգություն ստացանք տնտեսապես քայքայված և տեխնիկական տեսակետից հետամնաց մի երկիր։ Կոմունիստական պարտիայի առաջնորդ և Սովետական կառավարության ղեկավար Վ. Ի. Լենինը մշակեց գիտականորեն հիմնավորված մի ծրագիր և նշեց տնտեսապես հետամնաց Ռուսաստանը առաջավոր հզոր սոցիալիստական տերության վերածելու հիմնական ուղիները։ Վ. Ի. Լենինը նախատեսում էր ամենից առաջ երկրի սոցիալիստական ինդուստրացումը, ծանր արդյունաբերության բազմակողմանի զարգացումը, ամբողջ ժողովրդական տնտեսության էլեկտրիֆիկացումը։

Առաջնորդվելով երկրի ինդուստրացման լենինյան հանճարեղ պլանով, Կոմունիստական պարտիան Ի. Վ. Ստալինի գլխավորած Կենտրոնական Կոմիտեի ղեկավարությամբ, նախապատերազմյան հնգամյակների տարիներին ջախջախեց տրոցկիստներին, բուխարինականներին, բուրժուական նացիոնալիստներին և հաջողությամբ կենսագործեց երկրի սոցիալիստական ինդուստրացումը։

Երկրի սոցիալիստական ինդուստրացումը հնարավորություն տվեց տեխնիկապես վե-



րակառուցել ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերը։ Մեր Հայրենիքը հետամնաց ագրարային երկրից դարձավ ինդուստրիալ-կոլտնտեսային հզոր տերություն։

Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը իրենց տնտեսական քաղաքականությունը միշտ խարսխել են մարքսիզմ-լենինիզմի գիտական թեորիայի ամուր հիմքերի վրա։ Պարտիան և կառավարությունը երբեք և ոչ մի ժամանակ աչքաթող չեն արել և չէին էլ կարող անել այն հանգամանքը, որ հասարակական արտադրության անընդհատ աճումն ու կատարելագործումը կարելի է ապահովել արտադրության միջոցների արտադրության առավել աճմամբ, որ սոցիալիստական ընդլայնված վերարտադրությունը անհրաժեշտորեն պահանջում է արտադրության տեխնիկական բազայի քանակական ու որակական անընդհատ և արագ տեմպերով զարգացում ու կատարելագործում։ «Արտադրության միջոցների արտադրության առավել աճումը,— նշում է Ի. Վ. Ստալինը,— անհրաժեշտ է ո՛չ միայն այն պատճառով, որ նա պետք է սարքավորումով ապահովի ինչպես իր սեփական ձեռնարկությունների, այնպես էլ ժողովրդական տնտեսության մնացած բոլոր ճյուղերի ձեռնարկություննե-

րը, այլև այն պատճառով, որ առանց նրան առհասարակ անհնարին է ընդլայնված վերարտադրություն իրականացնելը»։

1953 թվականին ՍՍՌՄ խոշոր արդյունաբերության ամբողջ արտադրանքը 1913 թվականի մակարդակը (համեմատական գներով) գերազանցեց 30 անգամ, ընդսմին՝ արտադրության միջոցների արտադրությունը՝ ավելի քան 50 անգամ, էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ գրեթե 70 անգամ, մեքենաներինը և սարքավորումներինը՝ 190 անգամ։ Եթե 1924—25 թվականներին արտադրության միջոցների բաժինը արդյունաբերության ամբողջ արտադրանքում կազմում էր մոտ 34 տոկոս, ապա 1953 թվականին կազմեց մոտ 70 տոկոս։ Գերագույն Սովետի կողմից հաստատված ՍՍՌՄ 1955 թվականի Պետական բյուջեով ամբողջ արդյունաբերության ֆինանսավորման համար նախատեսված 189,6 միլիարդ ռուբլուց 163,6 միլիարդ ռուբլին ներդրվում է ծանր ինդուստրիայի զարգացման մեջ։

Մեր երկրի ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի զարգացման անշեղ վերելքը ապահովելու համար անհրաժեշտ է մեքենայացնել և ավտոմատացնել արտադրության աշխատատար պրոցեսները, էլեկտրիֆիկաց-



նել ժողովրդական տնտեսությունը։ Այդ բոլորի համար հարկավոր են բազմաթիվ մեքենաներ և սարքավորումներ, որոնք կարող է տալ միմիայն ծանր արդյունաբերությունը։

Ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի անշեղ վերելքը ապահովելու համար անհրաժեշտ է անընդհատ բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը։ Աշխատանքի արտադրողականության բարձրացման կարևորագույն միջոցներից մեկը, դա արտադրության գործիքների, արտադրության մեջ օգտագործվող տեխնիկայի անընդհատ զարգացումն ու կատարելագործումն է։ Աշխատանքի արտադրողականության բարձրացումը պահանջում է արտադրության մեջ անընդհատ ներմուծել նոր բարձրորակ մեքենաներ, որոնք կարող են ստացվել միմիայն ծանր արդյունաբերությունից։ Այդ իսկ պատճառով էլ ծանր արդյունաբերության զարգացման արագ տեմպերը հանդիսանում են ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում աշխատանքի արտադրողականության բարձրացման անհրաժեշտ պայմանը։ Մեր երկրի ծանր արդյունաբերության զարգացման արագ տեմպերը հնարավորություն տվեցին 25 տարվա ընթացքում (1928—1953 թվականներ) աշխատանքի արտադրողականությունը բարձ-

րացնել արդյունաբերության մեջ մոտ 6 անգամ, շինարարությունում և երկաթուղային տրանսպորտում՝ 3,5 անգամ, իսկ կոլտնտեսություններում և սովխոզներում նախառևոլյուցիոն գյուղատնտեսության համեմատությամբ՝ մոտ 3 անգամ։

Առանց ծանր արդյունաբերության առավելագույն զարգացման հնարավոր չէ ապահովել սպառման առարկաների արտադրության անշեղ վերելքը, որովհետև սպառման առարկաների արտադրության բոլոր ձեռնարկությունները իրենց համար անհրաժեշտ արտադրության գործիքները ստանում են ծանր արդյունաբերությունից։ Ծանր արդյունաբերությունը արագ տեմպերով զարգացնելու շնորհիվ, սպառման առարկաների արտադրանքը վերջին 28 տարվա ընթացքում մեր երկրում աճել է ավելի քան 12 անգամ։ 1955 թվականին արտադրվելու է 1 միլիոն 450 հազար կարի մեքենա, 290 հազար լվացքի մեքենա։ ՍՍՌՄ Ռադիո-տեխնիկական արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունները արտադրելու են 2 միլիոն 650 հազար ռադիոընդունիչ, 450 հազար տելևիզոր։ Ծանր արդյունաբերության զարգացման արագ տեմպերը ապահովում են թեթև ու սննդի արդյունաբերության անշեղ վե-



րելքը։ Ծանր արդյունաբերությունը արագ տեմպերով զարգացնելու շնորհիվ, 1953 թվականի համեմատությամբ, 1954 թվականին բամբակե խայտահյուս գործվածքների արտադրությունը ավելացավ 53 տոկոսով, իսկ խավոտ գործվածքներինը՝ 88 տոկոսով։ Բրդե գործվածքների արտադրությունը աճեց 17 տոկոսով, իսկ կոշկեղենի արտադրությունը՝ 7 տոկոսով։

Առանց զարգացած ծանր ինդուստրիայի, և հատկապես մեքենաշինության, հնարավոր չէ ապահովել սոցիալիստական գյուղատնտեսությունը արտադրության անհրաժեշտ միջոցներով և գործիքներով։ Գյուղատնտեսական արտադրության մեջ տեղի ունեցող բոլոր աշխատատար պրոցեսները անհրաժեշտորեն պահանջում են համապատասխան արտադրության գործիքներ։ Գյուղատնտեսությունն իրեն համար անհրաժեշտ բոլոր տեսակի արտադրության գործիքները ստանում է արդյունաբերությունից։ Հանճարեղ Լենինը նշում էր, որ «Սոցիալիզմի միակ նյութական հիմքը կարող է լինել խոշոր մեքենայական արդյունաբերությունը, որն ընդունակ է վերակառուցելու նաև հողագործությունը»։

Գյուղատնտեսության նյութա-տեխնիկական բազան հիմնականում ստեղծվում է ստ-

ցիալիստական արդյունաբերության մեջ։ ՍՍՌՄ սոցիալիստական գյուղատնտեսությունը, որն ստեղծվել ու ամրապնդվել է Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, այժմ հենվում է հզոր նյութա-տեխնիկական բազայի վրա և հանդիսանում է աշխարհում ամենախոշոր ու մեքենայացված գյուղատնտեսությունը։ 1954 թվականին ՍՍՌՄ գյուղատնտեսության մեջ օգտագործվում էր մեկ միլիոն 260 հազար տրակտոր, 326 հազար հացահատիկային կոմբայն, 370 հազար բեռնատար ավտոմեքենա և ուրիշ շատ մեքենաներ։ Միայն 1954 թվականին սոցիալիստական արդյունաբերությունը մեր երկրի գյուղատնտեսությանը տվեց 137 հազար տրակտոր (15 ուժանոցի վերածած) և 46 հազար շարահերկ մշակության տրակտոր, 37 հազար հացահատիկային կոմբայն և այլ գյուղատնտեսական մեքենաներ։ Պարտիան և կառավարությունը նախատեսել են, որ մինչև 1957 թվականի մայիսի 1-ը սոցիալիստական արդյունաբերությունը երկրի գյուղատնտեսությանը կմատակարարի ընդհանուր նշանակման առնվազն 500 հազար տրակտոր (15 ուժանոցի վերածած) և հեռաշար հերկի 250 հազար տրակտոր, ինչպես նաև շատ ուրիշ գյուղատնտեսական մեքենաներ։



Ինչպես Սովետական Միության մյուս ռեսպուբլիկաներում, այնպես էլ Հայկական ՍՍՌ-ում, ծանր արդյունաբերությունը, համեմատած սպառման ապրանքների արտադրության հետ, միշտ զարգացել է ավելի արագ տեմպերով։ Հայաստանի աշխատավորները ապահովելով արտադրության միջոցների արտադրության զարգացման բարձր տեմպերը, ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում հասել են մեծ հաջողությունների։ Ներկայումս յուրաքանչյուր 4 օրում ռեսպուբլիկայի արդյունաբերությունը նույնքան արտադրանք է թողարկում, որքան թողարկվել է ամբողջ 1913 թվականին, իսկ էլեկտրակայանները մեկ օրում ավելի շատ էլեկտրաէներգիա են արտադրում, քան արտադրվել է ամբողջ 1913 թվականին։ 1954 թվականին ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը, 1953 թվականի համեմատությամբ, աճեց 18 տոկոսով, 1950 թվականի համեմատությամբ՝ 79 տոկոսով, իսկ նախապատերազմյան 1940 թվականի համեմատությամբ՝ 4,5 անգամ։ Ծանր արդյունաբերության արագ աճի հիման վրա ռեսպուբլիկայում 1954 թվականին պլանից ավելի արտադրվել են զանազան տեսակի գործվածքներ, հագուստեղեն, սննդա-

մթերքներ, տնային գործածության առարկաներ և այլն։ Մանր արդյունաբերությունից ստանալով բազմաթիվ նոր և առաջնակարգ մեքենաներ, մեծ հաջողություններ է ձեռք բերում նաև ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը։

ՍՄԿԿ Կենտկոմի Սեպտեմբերյան, Փետրվար-մարտյան, Հունիսյան, ինչպես և Հունվարյան պլենումները նշեցին, որ գյուղատնտեսության բոլոր ճյուղերի անշեղ վերելքը ապահովելու համար անհրաժեշտ է այսուհետև ևս արագ տեմպերով զարգացնել ծանր արդյունաբերությունը։

Կոմունիստական պարտիան, ղեկավարվելով մարքսիստական-լենինյան թեորիայով, այժմ էլ, ինչպես միշտ, իր գլխավոր խնդիրն է համարում ապահովել ծանր արդյունաբերության հետագա արագ տեմպերով զարգացումը, որովհետև այն հանդիսանում է ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի անշեղ վերելքի, սովետական ժողովրդի բարեկեցության աճման հիմքը, մեր Հայրենիքի պաշտպանունակության ամրապնդման և նրա փառապանծ զինված ուժերի հզորության աղբյուրը։

---

ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ՓՈՐՁԻՑ

# ԲԱՐՁՐ ԲԵՐՔԻ ՀԱՄԱՐ

## Հոկտեմբերյանի շրջանի ճենակետային-ցուցադրական ՄՏ կայանի գլխավոր ագրոնոմ Զ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ և գլխավոր մեխանիկ Պ. ՆԵՐՍԻՍՅԱՆԻ պատմածը

*Մեր ՄՏ կայանի կոլեկտիվը աչքի ընկնող նվաճումներով է նշում 1955 թվականի Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի բացումը։ Ձեռք բերված բարձր ցուցանիշների համար ՄՏ կայանը կրկին անգամ առաջադրված է ցուցահանդեսի թեկնածու։*

*Անցյալ տարի ՄՏ կայանը տրակտորային աշխատանքների պլանը կատարեց 114 տոկոսով. մեկ հեկտար տրակտորային աշխատանքի ինքնարժեքը, պլանայինի հանդեպ, իջեցված է 5 տոկոսով։ Տարվա ընթացքում տնտեսված է 18 տոննա վառելանյութ։ Դրա շնորհիվ 1954 թվականին ՄՏ կայանը ավելի քան 140 հազար ռուբլի խնայողություն ունեցավ։*

Նյութական միջոցները խնայողությամբ ծախսելու և բարձր արտադրողականությամբ աշխատելու շնորհիվ. 1954 թվականին բամբակի մեկ ցենտներ բնավարձի ինքնարժեքը, պլանայինի համեմատությամբ, իջեցվեց 24 տոկոսով։ ՄՏ կայանի կողմից սպասարկվող կոլտնտեսություններում գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը և անասունների մթերատվությունը տարեցտարի բարձրանում է։ Ուշագրավ են հետևյալ տվյալները.

Գյուղատնտեսական հիմնական կուլտուրաների բերքատվության աճը ՄՏ կայանի գոտու կոլտնտեսություններում

(Ցենտներով, մեկ հեկտարից)

| | 1940 թ. | 1953 թ. | 1954 թ. |
|---|---|---|---|
| Խաղող | 43,0 | 65,1 | 85,8 |
| Բամբակ | 15,8 | 25,5 | 25,9 |
| Առվույտ | 62,0 | 82,0 | 97,5 |

Այսպիսի տվյալներ կարելի է բերել նաև գյուղատնտեսական մյուս կուլտուրաների բերքատվության և անասունների մթերատվության բարձրացման մասին։ Կովերի կաթնատվությունը, օրինակ, մեր սպասարկած կոլտնտեսություններում 1954 թվականին, 1950 թվականի համեմատությամբ,



բարձրացել է ավելի քան 2,4 անգամ։ Նույնը կարելի է ասել նաև ոչխարների բրդատվության մասին։

Տարեցտարի աճում է տրակտորային աշխատանքների ծավալը։ 1950 թվականի 21,8 հազար հեկտարի փոխարեն, անցյալ տարի մենք կատարեցինք 42,4 հազար հեկտարի աշխատանք, զգալի չափով գերակատարելով պետական առաջադրանքները։ Այժմ կոլտնտեսություններում մենք կատարում ենք ավելի քան 40 տեսակի աշխատանք, 1953 թվականի 12 տեսակի դիմաց։ ՄՏ կայանի գոտու կոլտնտեսություններում մենք լրիվին մեքենայացրել ենք հացահատիկային, տեխնիկական և կերային կուլտուրաների վարն ու ցանքը, այգիների պլանտաժային վարը, միջշարքային տարածությունների մշակությունը և շատ ուրիշ աշխատանքներ։ Որոշ տարածությունների վրա բանջարա-բոստանային և տեխնիկական կուլտուրաների ցանքը կատարում ենք քառակուսի-բնային եղանակով։ Դեռ անցյալ տարի այդ առաջավոր մեթոդով մշակեցինք 25 հեկտար բանջարա-բոստանային կուլտուրաներ։ Այս տարի այդ եղանակով մշակում ենք 600 հեկտար բամբակենի, 40 հեկտար եգիպտացորեն։

Սոցիալիստական մրցության մեջ ձեռք բե-

րած բարձր ցուցանիշների համար մեքենատրակտորային կայանը օրերս նվաճեց ՍՍՌՄ Մինիստրների Սովետի փոխանցիկ Կարմիր դրոշը և միաժամանակ պարգևատրվեց 37.500 ռուբլի գումարով։

Մեր մեխանիզատորներն ու մասնագետները ինչպե՞ս են հասել այդ հաջողություններին։ Գյուղատնտեսական բոլոր աշխատանքները մենք կատարում ենք սահմանված ժամկետներին և բարձր որակով։ ՄՏ կայանը սիստեմատիկաբար և ճշտորեն կատարում է տիպային պայմանագրով ստանձնած իր բոլոր պարտավորությունները։ ՄՏ կայանն ունի տրակտորային 14 բրիգադա։ Նրանցից յուրաքանչյուրն իր տարեկան պլանները միշտ կատարում ու գերակատարում է, աշխատանքի բոլոր տեսակների գծով։

ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան և հաջորդ պլենումների որոշումների կենսագործման շնորհիվ, մեզ մոտ խստորեն բարձրացել է մեխանիզատորների և մասնագետների պատասխանատվությունը կոլտնտեսային արտադրության նկատմամբ։ Այժմ և՛ մեխանիզատորների, և՛ մասնագետների ուշադրության կենտրոնում են գտնվում գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասունների մթերատվության բարձրացման



խնդիրները։ Դրանով պետք է բացատրել այն մեծ հոգատարությունը, որ այժմ ցուցաբերվում է աշխատանքի որակի նկատմամբ։

Հայտնի է, որ առաջավոր ագրոտեխնիկայի ճիշտ կիրառումը սերտորեն կապված է ՄՏ կայանի տեխնիկայի արդյունավետ օգտագործման հետ։ Ագրոտեխնիկայի կոմպլեքսը հաջողությամբ կկիրառվի միայն այն դեպքում, եթե մեխանիզմները գործեն անխափան։

Որպեսզի տրակտորները և մյուս մեքենաներն աշխատեն անխափան, հարկավոր է օրինակելիորեն կազմակերպել նրանց տեխնիկական խնամքը։ Դա յուրաքանչյուր մեխանիզատորի լավ աշխատանքի երաշխիքն է։ Ահա թե ինչու մենք մեծ ուշադրություն ենք դարձնում մեքենաների տեխնիկական խնամքին և այն կատարում ենք սահմանված կանոններին խստորեն համաձայն։

Մեր ՄՏ կայանում կիրառում ենք տրակտորների տեխնիկական խնամքի հետևյալ կանոնները. մեքենայի առաջին խնամքը կատարվում է 25—27 հեկտար, երկրորդ խնամքը՝ 50—54 հեկտար, երրորդ խնամքը՝ 150—160 հեկտար վարից հետո և այլն։

Մեքենաների տեխնիկական վիճակի վրա լուրջ ուշադրություն է դարձվում հերթափոխի

ժամանակ. տրակտորը հաջորդ հերթափոխին հանձնելու ժամանակ ստուգվում է նրա տեխնիկական վիճակը, վերացվում են նկատված թերությունները, որից հետո միայն մեքենան սարքին վիճակում հանձնվում է տրակտորիստին։

Մեքենաների անխափան աշխատանքն ապահովելու նպատակով մեզ մոտ խիստ ուժեղացվել է դաշտում աշխատող մեխանիզատորներին ցույց տրվող օգնությունը։ ՄՏ կայանն ունի երեք շրջիկ արհեստանոց, որոնք ապահովված են բոլոր տեսակի անհրաժեշտ գործիքներով։ Շրջիկ արհեստանոցներից յուրաքանչյուրն ամրացված է տրակտորային որոշ բրիգադների և պատասխանատու է նրանց անխափան աշխատանքի համար։ Շրջիկ արհեստանոցը օրվա ընթացքում լինում է բրիգադներում և անհրաժեշտ օգնություն է ցույց տալիս դաշտում աշխատող տրակտորիստներին։

Տրակտորային բրիգադներում հաճախ են լինում նաև ՄՏ կայանի ղեկավարները և մասնագետ մեխանիզատորները՝ գլխավոր ինժեները, գյուղգործիքների մեխանիկը և ուրիշներ, որոնք գործնական միջոցառումներով ապահովում են մեխանիզմների բարձր արտադրողական աշխատանքը։ Նրանք տրակ-



տորիստներին օգնում են նաև տեխնիկական խնամքի կանոնները լավ տիրապետելու և ճշտորեն կիրառելու գործում։

Մեքենաների բարձր արտադրողականությունն ապահովելու գործում վճռական նշանակություն ունի նորոգումների ճիշտ կազմակերպումը։ Նորոգման բարձր որակն ապահովելու նպատակով, մենք հիմնականում նորոգումները կատարում ենք ոչ թե ձմռանը, ինչպես մյուս ՄՏ կայաններում է կատարվում, այլ աշնանը և ձմեռնամուտին, մեքենաների համեմատաբար քիչ ծանրաբեռնված շրջանում՝ սեպտեմբեր—հոկտեմբեր և նոյեմբեր ամիսներին։ 1954 թվականին, օրինակ, մենք մեքենաների նորոգումն ավարտեցինք նոյեմբերի վերջին, այսինքն այն ժամանակ, երբ այդ աշխատանքը մյուս ՄՏ կայաններում նոր էր միայն սկսվում։

Մեզ մոտ վճռականորեն բարելավվել է նաև աշխատանքի կազմակերպումը։ Տրակտորային յուրաքանչյուր բրիգադայի համար հաստատվում է արտադրական պլան։ Այդ պլանում խստորեն հաշվի են առնվում կոլտնտեսությունների պահանջներն ըստ տիպային պայմանագրի։ Յուրաքանչյուր մեխանիզատոր ժամանակին իմանում է իր կատարելիք աշխատանքը։

Գարնան-դաշտային աշխատանքներն սկսվելուց առաջ կազմվում է տրակտորների շարժման մարշրուտը։ Ճիշտ կազմված մարշրուտը կարևոր նշանակություն ունի ինչպես ագրոտեխնիկայի կոմպլեքս միջոցառումների կիրառման, այնպես էլ մեքենաների արդյունավետ օգտագործման համար։ Այդ պատճառով էլ տրակտորների մարշրուտը կազմելուն մասնակցում են կոլտնտեսության նախագահը, ագրոնոմը և դաշտավարական ու տրակտորային բրիգադների բրիգադիրները. ըստ որում նկատի է առնվում, որ յուրաքանչյուր տեսակի աշխատանք կատարվելու է ագրոտեխնիկայով սահմանված ժամկետին։ Աշխատանքի հաշվառումը կատարվում է ամեն օր։ Սերտորեն համագործակցելով միմյանց հետ, տրակտորիստներն ու կոլտնտեսականները ամեն ջանք գործ են դնում առաջավոր ագրոտեխնիկայի կանոնները ճշտորեն կիրառելու համար։ ՄՏ կայանի ագրոնոմները սիստեմատիկ հսկողություն են ունենում դաշտային բոլոր աշխատանքների նկատմամբ։

Ագրոնոմի տեղը արտադրությունն է։ Այդ լավ գիտեն մեր ագրոնոմները, որոնց համարյա միշտ կարելի է տեսնել դաշտում, կոլտնտեսությունում, աշխատանքի կազմակերպման, առաջավոր ագրոտեխնիկայի արմատավորման գործով զբաղվելիս։



Աշխատանքն այդպես կազմակերպելու շնորհիվ, մեր ՄՏ կայանի սպասարկած կոլտնտեսություններում դաշտային բոլոր աշխատանքները կատարվում են ժամանակին և բարձր որակով։

Անցյալ տարի մեր ՄՏ կայանի սպասարկած կոլտնտեսություններից յուրաքանչյուրն ստացավ 3—8 միլիոն ռուբլու դրամական եկամուտ, և յուրաքանչյուր աշխօրին բաշխվեց 15—18 ռուբլի դրամ, 3 կգ. հացահատիկ և այլ մթերքներ։

Մասնակցելով 1955 թվականի Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսին, մեր մեխանիզատորներն ու մասնագետները ավելի կհարստացնեն իրենց գիտելիքները, կաշխատեն կրկնապատկված եռանդով, արտադրության մեջ կարմատավորեն առաջավոր փորձը և կհասնեն նոր հաջողությունների։

---

# ՄԵՐ ՀԱՅՐԵՆԻՔԻ ՄԱՅՐԱՔԱՂԱՔ ՄՈՍԿՎԱՅԻ ՆՈՐԱԿԱՌՈՒՅՑՆԵՐԸ

(Թվեր և փաստեր)

*Տարեցտարի ծաղկում և բարգավաճում է մեր Հայրենիքի մայրաքաղաք Մոսկվան։ Այստեղ ամեն տարի հսկայական շինարարություն է կատարվում։ Այդ են ցույց տալիս հետևյալ թվերն ու փաստերը.*

★ *1951—1954 թվականներին Մոսկվայում կառուցվել և շահագործման են հանձնվել 3 միլիոն 240 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն, 106 դպրոցների, 250 մանկապարտեզների, մսուրների, հիվանդանոցների, կինո-թատրոնների շենքեր։ Նույն ժամանակամիջոցում քաղաքային տնտեսության վրա ծախսվել է 18 միլիարդ ռուբլի գումար։*

★ *Ընթացիկ տարում շահագործման կհանձնվի մեկ միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն, իսկ եկող տարի՝ մեկ միլիոն 150 հազար քառակուսի մետր։ Այդ նշանակում է, որ յուրաքանչյուր երեք օրում Մոսկվայում կառուցվում և շահագործման է հանձնըվում 100 բնակարանոց 2 շենք, 4 հազար քառակուսի մետր ընդհանուր բնակելի տարածությամբ։ Կառուցել մեկ միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն իր կուլտուր-կենցաղային հիմնարկներով, դպրոցներով, կինո-թատրոններով, խանութներով, պոլիկլինիկաներով, այդ նշանակում է ամեն տարի կառուցել մի նոր և այն էլ ոչ փոքր քաղաք։*



★ *Մոսկվայում ստեղծված է շինանյութերի արտադրության ձեռնարկությունների խիտ ցանց, սարքավորված առաջնակարգ տեխնիկայով։ Այդ ձեռնարկություններից իրենց մեծությամբ աչքի են ընկնում Մոսկվայի և Լյուբերեցկիի խոշոր մասշտաբի երկաթբետոնի գործարանները։ Ներկայումս կառուցվում և շուտով շահագործման կհանձնվեն շինանյութերի արտադրության 48 նոր ձեռնարկություններ։*

★ *Մոսկվա քաղաքի շինարարության մեջ աշխատող բանվորների, տեխնիկների և ինժեներների թիվը հասնում է 120 հազար հոգու։ Շինարարները իրենց տրամադրության տակ ունեն 600 աշտարակային և 350 ավտոմոբիլային ամբարձիչներ, 300 էքսկավատորներ, 220 բուլդոզերներ, տասնյակ հազար շինարարական այլ սարքավորումներ ու գործիքներ։*

★ *Մոսկվայի շինարարների պատվերով շինանյութերի արդյունաբերության ձեռնարկությունները շինարարական կազմակերպություններին պետք է տան 700 հազար խորանարդ մետր երկաթ-բետոնե մասեր, 400 հազար տոննա ցեմենտ, 330 հազար տոննա լուսամուտի ապակի, 680 միլիոն հատ աղյուս և շատ այլ տեսակի շինանյութ։*

# ՄԵՐ ՀԱՅՐԵՆԻՔԻ ՄԱՅՐԱՔԱՂԱՔ ՄՈՍԿՎԱՅԻ ՆՈՐԱԿԱՌՈՒՅՑՆԵՐԸ

(Թվեր և փաստեր)

*Տարեցտարի ծաղկում և բարգավաճում է մեր Հայրենիքի մայրաքաղաք Մոսկվան։ Այստեղ ամեն տարի հսկայական շինարարություն է կատարվում։ Այդ են ցույց տալիս հետևյալ թվերն ու փաստերը.*

★ *1951—1954 թվականներին Մոսկվայում կառուցվել և շահագործման են հանձնվել 3 միլիոն 240 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն, 106 դպրոցների, 250 մանկապարտեզների, մսուրների, հիվանդանոցների, կինո-թատրոնների շենքեր։ Նույն ժամանակամիջոցում քաղաքային տնտեսության վրա ծախսվել է 18 միլիարդ ռուբլի գումար։*

★ *Ընթացիկ տարում շահագործման կհանձնվի մեկ միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն, իսկ եկող տարի՝ մեկ միլիոն 150 հազար քառակուսի մետր։ Այդ նշանակում է, որ յուրաքանչյուր երեք օրում Մոսկվայում կառուցվում և շահագործման է հանձնըվում 100 բնակարանոց 2 շենք, 4 հազար քառակուսի մետր ընդհանուր բնակելի տարածությամբ։ Կառուցել մեկ միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն իր կուլտուր-կենցաղային հիմնարկներով, դպրոցներով, կինո-թատրոններով, խանութներով, պոլիկլինիկաներով, այդ նշանակում է ամեն տարի կառուցել մի նոր և այն էլ ոչ փոքր քաղաք։*



★ *Մոսկվայում ստեղծված է շինանյութերի արտադրության ձեռնարկությունների խիտ ցանց, սարքավորված առաջնակարգ տեխնիկայով։ Այդ ձեռնարկություններից իրենց մեծությամբ աչքի են ընկնում Մոսկվայի և Լյուբերիցկիի խոշոր մասշտաբի երկաթբետոնի գործարանները։ Ներկայումս կառուցվում և շուտով շահագործման կհանձնվեն շինանյութերի արտադրության 48 նոր ձեռնարկություններ։*

★ *Մոսկվա քաղաքի շինարարության մեջ աշխատող բանվորների, տեխնիկների և ինժեներների թիվը հասնում է 120 հազար հոգու։ Շինարարները իրենց տրամադրության տակ ունեն 600 աշտարակային և 350 ավտոմոբիլային ամբարձիչներ, 300 էքսկավատորներ, 220 բուլդոզերներ, տասնյակ հազար շինարարական այլ սարքավորումներ ու գործիքներ։*

★ *Մոսկվայի շինարարների պատվերով շինանյութերի արդյունաբերության ձեռնարկությունները շինարարական կազմակերպություններին պետք է տան 700 հազար խորանարդ մետր երկաթ-բետոնե մասեր, 400 հազար տոննա ցեմենտ, 330 հազար տոննա լուսամուտի ապակի, 680 միլիոն հատ աղյուս և շատ այլ տեսակի շինանյութ։*

★ 1955—1957 թվականներին ավելի քան մեկ ու կես միլիոն քառակուսի մետր բարեկարգ բնակելի տարածություններ են կառուցվելու քաղաքի Լենինգրադյան և Վոլոկոլամսկի խճուղիների վրա, հարյուր հազարավոր քառակուսի մետր շինարարություն է կատարվելու առաջին Մեշչանսկի և Շչերբակովի փողոցների վրա և այլ վայրերում։ Այսօր մայրաքաղաքում գործում են մոտ 600 շինարարական հրապարակներ, որոնց թիվը օրեցօր ավելանում է։

★ Մոսկվան 1960 թվականին լրացուցիչ կստանա 400 դպրոցական նոր շենք, որը կապահովի դպրոցների մեկ հերթի նորմալ աշխատանքը։

★ Մոսկվայի շինարարները պարտավորվել են այս տարի շահագործման հանձնել 43 դպրոցական շենք՝ 35.500 սովորողների համար։ Լուրջ ուշադրություն է դարձվում նոր դպրոցների կահավորման վրա։

★ Զգալի չափերով ընդարձակվելու է հիվանդանոցների ցանցը։ Շարք են մտնելու մի քանի խոշոր սանատորիաներ, բացվելու են հարյուրավոր նոր խանութներ, այդ թվում 7 հարկանի «Մանկական աշխարհ» ունիվերմագը, որի վաճառասրահների ընդհանուր երկարությունը լինելու է մեկ ու կես կիլոմետր և նրանում աշխատելու են 800 հոգի։

★ Հանրային խոշոր կառուցումների շարքում է «Ուկրաինա» 1.000 համարանոց հյուրանոցը, որը շահագործման է հանձնվելու 1956 թվականին։ Մայրա-



քաղաքում բացի մի շարք ուրիշ հյուրանոցներից, կառուցվում են հյուրանոցային տիպի տասնյակ հանրակացարաններ Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի էքսկուրսանտների համար։

★ Այս տարի մոսկվացիները ստացել են 3 կինո-թատրոնի նոր շենք և մինչև տարվա վերջը նորից շահագործման կհանձնվի 6 կինո-թատրոնի շենք։ Շուտով սկսվելու է հազար տեղանոց 3 կինո-թատրոնների շինարարությունը։ Կինո-թատրոնները ունենալու են հատուկ հարմարանքներ ու կահավորանք։

★ Մի խումբ ճարտարապետներ, կոնստրուկտորներ արդեն վերջացրել են 100 հազար հոգու համար ֆիզկուլտ ստադիոնի կառուցման նախագիծը, որն ունենալու է ծածկված դահլիճ 20 հազար հոգու համար և բաց լողարան՝ 15 հազար հանդիսատեսի համար։

★ Մայրաքաղաքի միայն հարավ-արևմտյան մասում տասը տարվա ընթացքում կատարվելու է 2 միլիոն քառակուսի մետր շինարարություն։ Կառուցվելու է 90 մանկապարտեզի, 90 մանկամսուրի, ինչպես նաև ակումբի, պիոներական տան, թատրոնի, կինո-թատրոնի, գրադարանի, պոլիկլինիկայի, հիվանդանոցի շենքեր, խանութներ, բաղնիքներ, լվացքատներ և կենցաղային այլ սպասարկման արհեստանոցներ։ Այդ բոլորի հետ միաժամանակ, քաղաքի այդ մասում կառուցվելու է 45 դպրոց։

★ Մոսկվայի շինարարները, լայնորեն արմատավորելով շինարարության ինդուստրիալ մեթոդները, բարելավում են շինարարության աշխատանքները, իջեցնում են ինքնարժեքը, պայքարում են կառուցել արագ, բարձր որակով և էժան։ Միայն պատրաստի հին նախագծերի վերանայումը հնարավորություն է տվել տնտեսել 50 միլիոն ռուբլի, որով կարելի է լրացուցիչ կառուցել 11 խոշոր դպրոց, կամ մի քանի բազմահարկ բնակելի շենքեր՝ 2.800 մարդու համար։

---



# ԱՍԻԱՅԻ ԵՎ ԱՖՐԻԿԱՅԻ ԵՐԿՐՆԵՐԻ ԿՈՆՖԵՐԵՆՑԻԱՆ

Ն. ՊԱՍՏՈՒԽՈՎ

Այս տարվա ապրիլի 18-ից մինչև 24-ը Բանդունգ քաղաքում (Ինդոնեզիա) տեղի ունեցավ Ասիայի և Աֆրիկայի 29 երկրների կոնֆերենցիան։ Ինչպես հայտնի է, Բանդունգի կոնֆերենցիայի հրավիրման որոշումը 1954 թվականի վերջերին ընդունել էին Հնդկաստանի, Ինդոնեզիայի, Բիրմայի, Պակիստանի և Ցեյլոնի պրեմյեր-մինիստրները՝ Բոգորայում (Ինդոնեզիա) կայացած խորհրդակցությունում։

Բոգորայի խորհրդակցությունը Ասիայի և Աֆրիկայի երկրների կոնֆերենցիայի առաջ դրել էր հետևյալ խնդիրները. հաստատել բարի կամք և համագործակցություն, զարգացնել բարեկամական և բարիդրացիական հարաբերություններ, ուսումնասիրել սոցիալական, տնտեսական և կուլտուրական այն պրոբլեմներն ու հարցերը, որոնք վերա-

բերում են ազգային սուվերենիտետին, ռասայականությանը և գաղութային սիստեմին, ավանդ մուծել ընդհանուր խաղաղությունը և համագործակցությունն ամրապնդելու գործին։

Այդ որոշումը վկայում էր այն մասին, որ Ասիայի և Աֆրիկայի հետպատերազմյան զարգացման մեջ տեղի է ունեցել դրական շրջադարձ։ Այժմ Ասիայի և Աֆրիկայի ժողովուրդներն այլևս ցանկություն չունեն հանդուրժելու իմպերիալիզմի գաղութային սիստեմը, ռասայական խտրականությունը։ Նրանք այսօր, ավելի քան երբևէ, լի են իրենց ինքնորոշման իրավունքը և ազգային լիակատար անկախությունն ապահովելու վճռականությամբ։ Ուստի լիովին հասկանալի է այն ջերմ և միահամուռ պաշտպանությունը, որով ընդունեցին Ասիայի և Աֆրիկայի ժողովուրդները Բանդունգի կոնֆերենցիայի հրավիրման լուրը։

Սակայն ԱՄՆ-ի և Անգլիայի իմպերիալիստական շրջանները անբարյացակամ ընդունեցին Ասիայի և Աֆրիկայի երկրների կոնֆերենցիայի հրավիրման լուրը։ Ամերիկյան թերթերը ուղղակի գրել էին, որ ԱՄՆ-ի կառավարող շրջանների տեսակետով՝ այդպիսի կոնֆերենցիայի հրավիրումը «չափազանց անցանկալի է»։



ԱՄՆ-ի մամուլը սանձարձակ պրոպագանդիստական կամպանիա սկսեց Բանդունգի կոնֆերենցիայի հիմնական մասնակիցների դեմ։

Հնդկական «Պրես տրաստ օֆ Ինդիա» հեռագրական գործակալությունը բավական պերճախոս կերպով նկարագրել է կոնֆերենցիայի հրավիրման փաստի կապակցությամբ Վաշինգտոնում և Լոնդոնում առաջացած իրարանցումը։ «Բանդունգի կոնֆերենցիայի նկատմամբ Արևմուտքի ռեակցիան,— ասված է գործակալության հաղորդագրության մեջ,— փոփոխություն կրեց։ Արևմտյան տերությունները կոնֆերենցիայի վրա նայում էին նախ՝ խեթ աչքով, ապա՝ կասկածանքով, իսկ հետո հաշտվեցին նրա հետ, կարծելով, որ կոնֆերենցիայի այն մասնակիցները, որոնք տրամադրված են հօգուտ Արևմուտքի, կպաշտպանեն իրենց շահերը»։

Միայն այն բանից հետո, երբ ԱՄՆ-ը և Անգլիան հասկացան, որ տապալված են կոնֆերենցիայի հրավիրումը վիժեցնելու իրենց փորձերը, իրենցից կախված երկրներին, ինչպիսիք են, օրինակ, Տայլանդը, Ֆիլիպինները, Իրաքը և Թյուրքիան, թույլատրեցին մասնակցելու Բանդունգի կոնֆերենցիային։

Բանդունգի կոնֆերենցիայի ընթացքը ակնառու կերպով ցույց տվեց այդ և մի շարք ուրիշ երկրների կեղտոտ դերը, որոնք փորձում էին պառակտում մտցնել կոնֆերենցիայի մասնակիցների միջև։ ԱՄՆ-ը հոգ էր տարել և այդ երկրներին մատակարարել պետական դեպարտամենտի ծածկագրեր։ «Վաշինգտոնի կառավարությունը,— գրել է թյուրքական «Խյուրրիետ» թերթը,— զանազան երկրների իր դիվանագիտական ներկայացուցիչներին ուղարկել է հուշագիր՝ Բանդունգի կոնֆերենցիայի որոշ մասնակիցների համար։ Ընդսմին, նշում է թերթը, ԱՄՆ-ը «հույս ունի, որ բարեկամ (?) երկրները կպաշտպանեն ամերիկյան տեսակետը»։

Համապատասխան հրահանգները և Բանդունգի կոնֆերենցիայի մասնակից ամերիկյան «բարեկամների» «դերերը»,— ինչպես հաղորդում է հնդկական «Բլիտց» շաբաթաթերթը,— հանգամանորեն մշակեցին Բանդկոկում— (Տաիլանդ)՝ ամերիկյան դիվանագետների «գաղտնի խորհրդակցությունում»։ Խորհրդակցությունը ցուցում տվեց Տաիլանդին, Ֆիլիպպիններին, Իրաքին և Թյուրքիային՝ խանգարել այն հարցերի քննարկումը, որոնք դատապարտում են իմպե-



րիալիզմի գաղութային սիստեմը, դատապարտում են ռազմական բազաների ու խմբավորումների ստեղծումը Ասիայում, խոչընդոտներ հարուցել և թույլ չտալ, որ կոնֆերենցիայի մասնակիցները հավանություն տան խաղաղ համագործակցության հինգ սկզբունքներին, դեմ դուրս գալ ատոմային զենքի արգելմանը։

Ինչպես ցույց տվեց Բանդունգի կոնֆերենցիայի աշխատանքը և, որ գլխավորն է, հիշյալ երկրների դելեգացիաների անդրկուլիսային գործունեությունը, վերջիններս իրենց ուժերի և հնարավորությունների չափ աշխատեցին կատարել ամերիկյան հրահանգները։ Հնդկական «Թայմս օֆ Ինդիա» թերթի թղթակից Ռեդդինը Բանդունգից տված հաղորդման մեջ գրել է. «այստեղ նախորոք ժամանած Ասիայի և Աֆրիկայի այն երկրների դելեգացիաների խմբերը, որոնք կողմնորոշվում են դեպի Արևմուտք, բացահայտորեն կուլուարային ագիտացիա են մղում Ներու—Չժոու Էն-լայի հինգ սկզբունքների դեմ... Նրանցից ոմանք եկել են միանման «հուշագրերով», որոնք ըստ երևույթին, ստացել են միևնույն աղբյուրից...»։ Մի այլ ինֆորմացիայի մեջ Ռեդդինն արձանագրել է. «շատ դելեգատներ մշակման են ենթարկ-

վում այն տարրերի կողմից, որոնք արտացոլում են նեղ շահեր և ձգտում են տարաձայնություն առաջ բերել կոնֆերենցիայի աշխատանքում։

Պառակտման հենց այս քաղաքականությունն էլ, որը լայն իմաստով նշանակում է «ասիացիներից մեկի պատերազմ պատրաստել մյուսի դեմ», կազմում է ԱՄՆ-ի կողմից Ասիայում և Աֆրիկայում վարվող գաղութային քաղաքականության ղեկավար սկզբունքը։

Սակայն ամերիկյան իմպերիալիստների այս հաշիվները սխալ դուրս եկան Բանդունգի կոնֆերենցիայում։ Այդ մասին պերճախոս կերպով վկայում է հետևյալ օրինակը. Թյուրքիան, Իրաքը, Տաիլանդը և Ֆիլիպպինները կոնֆերենցիային առաջարկեցին ընդունել մի բանաձև, որն իր մեջ զրպարտություն էր պարունակում կոմունիստական շարժման հասցեին։ Այդ բանաձևի քննարկման ընթացքում կոնֆերենցիայի մասնակիցների ճնշող մեծամասնությունը մերժեց այն։

Հակառակ ամերիկյան գործակալության պառակտիչ գործունեության, Ասիայի և Աֆրիկայի երկրների կոնֆերենցիան մշակեց համաձայնեցված որոշումներ միջազգային



կարևորագույն պրոբլեմների վերաբերյալ։ Դրան հսկայական չափով նպաստեց Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի խաղաղասիրական քաղաքականությունը, որն իր արտահայտությունը գտավ մի շարք կոնկրետ և պարզորոշ առաջարկություններում, որոնք նպաստում են միջազգային խաղաղության ամրապնդման գործին և համագործակցությանը Ասիայի ու Աֆրիկայի երկրների միջև։ «Այժմ,— հայտարարեց իր ճառում ՉԺՌ Պետական խորհրդի պրեմյեր Չժոու Էն-լայը,— Ասիայի և Աֆրիկայի արթնացած երկրներն ու ժողովուրդները ունեն մեկ ընդհանուր ցանկություն՝ պայքարել ռասայական խտրականության դեմ, պահանջել մարդու հիմնական իրավունքները, պայքարել գաղութացման դեմ, պահանջել ազգային անկախություն, վճռաբար պաշտպանել իր տերիտորիալ ամբողջականությունը և սուվերենիտետը»։

Չինական դելեգացիայի ղեկավարի առաջարկները ընդհանուր հավանության արժանացան ինչպես կոնֆերենցիայի մասնակիցների կողմից, այնպես էլ Ասիայի և Աֆրիկայի երկրների հասարակայնության լայն շրջաններում։ Հենց այդ առաջարկներն էլ

դրվեցին Բանդունգի կոնֆերենցիայի համաձայնեցված որոշումների հիմքում։

Կոնֆերենցիան որոշեց կարգավորել տնտեսական համագործակցությունը Ասիայի և Աֆրիկայի երկրների միջև «փոխադարձ շահավետության և ազգային սուվերենիտետի հարգման հիման վրա»։

Կոնֆերենցիան հայտարարեց, որ «ինքը լիովին պաշտպանում է ժողովուրդների և ազգերի ինքնորոշման սկզբունքը», դատապարտում «ռասայական սեգրեգացիայի և խտրականության քաղաքականությունն ու պրակտիկան»։ Կոնֆերենցիայի մասնակիցները արտահայտեցին իրենց «ջերմ համակրանքն ու պաշտպանությունը այն քաջարի դիրքի առթիվ, որ գրավել են ռասայական խտրականության զոհերը, հատկապես աֆրիկական, հնդկական և պակիստանյան ծագում ունեցող անձինք Հյուսիսային Աֆրիկայում»։

Ասիայի և Աֆրիկայի երկրների դելեգացիաները Բանդունգի կոնֆերենցիայում միահամուռ կերպով հայտարարեցին, որ գաղութային սիստեմը «մի չարիք է, որը պետք է կանխել շուտափույթ կերպով», որ «ժողովուրդներին օտարերկրյա ստրկացման, տիրապետության և շահագործման ենթարկելը՝ մարդու հիմնական իրավունքների բացա-



սումն է... և խանգարում է միջազգային խաղաղությանն ու համագործակցությանը նպաստելուն»։

Միջազգային ներկա իրադրության մեջ հատուկ նշանակություն է ստանում կոնֆերենցիայի ընդունած որոշումը, որը կոչ է անում՝ իրականացնել ընդհանուր զինաթափություն, լիովին արգելել մասսայական ոչնչացման զենքի արտադրությունը, փորձարկումը և գործադրումը։

«Այստեղ հավաքված Ասիայի և Աֆրիկայի երկրների՝ մարդկության և քաղաքակրթության նկատմամբ ունեցած պարտքն է,— ասված է բանաձևում,— հայտարարել, որ իրենք պաշտպանում են զինաթափման և զենքի այդ տեսակների (այսինքն՝ ատոմային և ջրածնային) արգելման պահանջը և դիմել երկրներին, ում այդ վերաբերվում է գլխավորապես, ու համաշխարհային հասարակական կարծիքին, կոչ անելով՝ իրականացնել այդպիսի զինաթափումն ու արգելումը»։

Կոնֆերենցիայի մասնակիցները ընդգծեցին «խաղաղ նպատակներով միջուկային էներգիայի զարգացման հատուկ նշանակությունը Ասիայի և Աֆրիկայի երկրների համար», հավանություն տալով այն պետու-

թյունների նախաձեռնությանը, «որոնք առաջարկել են ինֆորմացիա տալ խաղաղ նպատակներով ատոմային էներգիայի օգտագործման վերաբերյալ»։

Բանդունգի կոնֆերենցիան ընդունեց բացառիկ կարևորություն ունեցող դեկլարացիա ընդհանուր խաղաղությանը և համագործակցությանը նպաստելու մասին։ Դեկլարացիան համոզիչ կերպով ցուցադրեց Ասիայի և Աֆրիկայի ժողովուրդների կամքը՝ ապահովել մարդու հիմնական իրավունքների հարգումը, սուվերենիտետի և տերիտորիալ ամբողջականության հարգումը, բոլոր ռասաների հավասարության և բոլոր՝ մեծ թե փոքր ազգերի հավասարության ճանաչումը, ձեռնպահ մնալ ինտերվենցիայից և մյուս պետությունների ներքին գործերին միջամտելուց, ձեռնպահ մնալ ագրեսիայի ակտերից կամ սպառնալիքներից, միջազգային բոլոր վիճելի հարցերը լուծել խաղաղ միջոցներով, հարգել արդարությունը և միջազգային պայմանագրերը, ինչպես նաև մի շարք այլ սկզբունքներ։

Միջազգային հսկայական նշանակություն ունեն Բանդունգում, կոնֆերենցիայից դուրս, մի շարք դելեգացիաների ղեկավարների միջև ձեռք բերված համաձայնությունները։



Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան և Ինդոնեզիան պայմանագիր կնքեցին կրկնակի քաղաքացիության մասին։ Այդ պայմանագրի համաձայն, չինական ծագում ունեցող այն անձինք, ովքեր ունեն կրկնակի քաղաքացիություն (ՉԺՌ և Ինդոնեզիա), պետք է պայմանագրով սահմանված ժամկետում, սեփական ցանկությամբ, ընտրեն երկու քաղաքացիությունից մեկը։ Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան Լաոսի հետ կնքեց չհարձակման պակտ։ Վյետնամի դեմոկրատական Ռեսպուբլիկան Լաոսի հետ համաձայնագիր կնքեց բարիդրացիական հարաբերություններ հաստատելու մասին՝ Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի և Հնդկաստանի միջև կնքված համաձայնագրում շարադրված հինգ սկզբունքների սահմաններում։

«Ասիայի և Աֆրիկայի երկրների կոնֆերենցիան,— հայտարարեց ՉԺՌ Պետական Խորհրդի պրեմյեր Չժոու Էն-լայը,— հաստատեց և խրախուսեց փոխհարաբերությունները Ասիայի և Աֆրիկայի երկրների միջև։ Նա հաստատեց Ասիայի և Աֆրիկայի ժողովուրդների ընդհանուր ձգտումը՝ ոտքի ելնել գաղութացման դեմ, ամբողջ աշխարհի խաղաղության համար, քաղաքական, տըն-

տեսական և կուլտուրական բնագավառներում բարեկամական համագործակցության զարգացման համար»։

Ամփոփելով Բանդունգի կոնֆերենցիայի հանրագումարները, Հնդկաստանի պրեմյեր-մինիստր Ներուն նշեց, որ Ասիայի և Աֆրիկայի ժողովուրդները խաղաղության կարիք են զգում, և որ նրանք ուզում են համագործակցել աշխարհի բոլոր երկրների հետ՝ հավասար պայմաններով։ Ներուն կոչ արեց կոնֆերենցիայի մասնակիցներին՝ աշխատել կենսագործելու ընդունված որոշումները։

Ինդոնեզիայի պրեմյեր-մինիստր Սաստրոամիջոյոն նշելով խաղաղության և միջազգային համագործակցության գործում կոնֆերենցիայի ներդրած մեծ ավանդը, ընդգծեց. «Մենք՝ Ասիայի և Աֆրիկայի ժողովուրդներս, ցույց տվեցինք, որ կարող ենք համագործակցել— և որ մենք ուզում ենք խաղաղություն և ամենից առաջ՝ խաղաղություն... Թո՛ղ Բանդունգի կոնֆերենցիան, իբրև մի փարոս, լուսավորի Ասիայի և Աֆրիկայի հետագա պրոգրեսը»։

Ասիայի և Աֆրիկայի երկրների հասարակայնությունը իր ամենաջերմ հավանությունը տվեց Բանդունգի կոնֆերենցիայի որոշումներին։ Չինական «Ժենմինժիբաո» թեր-



թը գրում է, որ Բանդունգի կոնֆերենցիայի հաջողությունը կնպաստի Ասիայի և Աֆրիկայի ժողովուրդների ընդհանուր ձգտման իրագործմանը՝ զարգացնելու առևտուրը և տնտեսական համագործակցությունը միմյանց միջև։ Ինդոնեզական «Մերդիկա» թերթը գրում է, որ կոնֆերենցիայի նվաճումները՝ դա Ասիայի և Աֆրիկայի երկրների ավանդն է ամբողջ աշխարհի խաղաղության գործում։ Կոնֆերենցիան, գրում է յապոնական «Ասախի» թերթը, արտահայտեց Ասիայի և Աֆրիկայի միլիոնավոր մարդկանց կամքը՝ պատերազմի դեմ, հանուն խաղաղության։ Այդ կոնֆերենցիան,— գրում է թերթը,— ուժեղ տպավորություն թողեց գաղութացման դեմ տարբեր սոցիալական սիստեմի երկրների ցուցաբերած միահամուռ և ուժեղ դիմադրությամբ։

Հակառակ ԱՄՆ-ի և իմպերիալիստական մյուս պետությունների ոտնձգություններին, Բանդունգի կոնֆերենցիայում հնչեց Ասիայի և Աֆրիկայի արթնացած ժողովուրդների ձայնը։ Երկրագնդի երկու մայր ցամաքների 29 երկրներ դատապարտեցին գաղութային ու ռասսայական ճնշումը և իրենց զգալի ավանդը ներդրին ընդհանուր խաղաղությունն ամրապնդելու գործում։

---

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԽՄԲԵՐԻ ՀԱՄԱՐ

## *1. ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ ՊԱՇՏՊԱՆՈՒՄ Է ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՏԱՐԲԵՐ ՍԻՍՏԵՄՆԵՐ ՈՒՆԵՑՈՂ ԵՐԿՐՆԵՐԻ ԽԱՂԱՂ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Պատասխան ամերիկյան թերթի թղթակցի հարցերին, *Երկեր, հատոր 30, էջ 464—467, Հայպետհրատ, 1951։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— ՌԿ(բ)Պ 11-րդ համագումարը, *Երկեր, հատոր 33, էջ 305—306, Հայպետհրատ, 1952։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ինտերվյու «Օբսերվեր»-ի և «Մանչեստր Գարդիան»-ի թղթակից Ֆարբմանին, *Երկեր, հատոր 33, էջ 453—461, Հայպետհրատ, 1952։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ— Զրույց ամերիկյան առաջին բանվորական դելեգացիայի հետ, *Երկեր, հատոր 10, 7-րդ հարց, էջ 140—142, Հայպետհրատ, 1949։*

Ընկեր Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎԻ հայտարարությունը Բելգրադ քաղաքի օդանավակայանում, *մայիսի 26-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի մայիսի 28-ի համարում։*



Վ. Մ. ՄՈԼՈՏՈՎ— Միջազգային դրության և ՍՍՌՄ կառավարության արտաքին քաղաքականության մասին, *զեկուցում ՍՍՌՄ չորրորդ գումարման Գերագույն Սովետի երկրորդ սեսիայում 1955 թվականի փետրվարի 8-ին, Հայպետհրատ, 1955։*

Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ— Ճառ ՍՍՌՄ չորրորդ գումարման Գերագույն Սովետի երկրորդ սեսիայում,— *Հայպետհրատ, 1955։*

ՊԱՅՄԱՆԱԳԻՐ բարեկամության, համագործակցության և փոխադարձ օգնության մասին Ալբանիայի Ժողովրդական Ռեսպուբլիկայի, Բուլղարիայի Ժողովրդական Ռեսպուբլիկայի, Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի, Լեհական Ժողովրդական Ռեսպուբլիկայի, Հունգարական Ժողովրդական Ռեսպուբլիկայի, Չեխոսլովակյան Ռեսպուբլիկայի, Ռումինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի և Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության միջև, *տպագրված «Ս. Հ.»-ի մայիսի 15-ի համարում։*

Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության և Հարավսլավիայի Ֆեդերատիվ Ժողովրդական Ռեսպուբլիկայի կառավարությունների ԴԵԿԼԱՐԱՑԻԱՆ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թ. հունիսի 3-ի համարում։*

## 2. ԾԱՎԱԼԵՆՔ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ ՀԻՆԳԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱ ՊԼԱՆԸ ԺԱՄԿԵՏԻՑ ՇՈՒՏ ԿԱՏԱՐԵԼՈՒ ՀԱՄԱՐ

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Ճառ արդյունաբերության աշխատողների Համամիութենական խորհրդակցությունում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի մայիսի 20-ի համարում։*

Արդյունաբերության աշխատողների համամիութենական խորհրդակցության մասնակիցների ԴԻՄՈՒՄԸ Սովետական Միության բոլոր բանվորներին և բանվորուհիներին, ինժեներա-տեխնիկական աշխատողներին ու ծառայողներին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի մայիսի 22-ի համարում։*

Արդյունաբերության նոր վերելքի համար «Ս. Հ»-ի *առաջնորդող հոդվածը, տպագրված մայիսի 24-ի համարում։*

## 3. ՕՐԻՆԱԿԵԼԻՈՐԵՆ ԿԱՏԱՐԵՆՔ ԵԳԻՊՏԱՑՈՐԵՆԻ ՄՇԱԿՈՒԹՅՈՒՆԸ

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Անասնապահական մթերքների արտադրությունն ավելացնելու մասին, *զեկուցում ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի պլենումում 1955 թվականի հունվարի 25-ին, Հայպետհրատ, էջ 18—27, 1955։*



1955 թվականին եգիպտացորենի կողրերը սիլոսացնելու մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի մայիսի 20-ի համարում։*

Մ. Ե. ՕՋՅՈՐՆԻ— Եգիպտացորենի ռեկորդային բերք, *Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրություն, 1955։*

## 4. ԽՆԱՄՔՈՎ ԿԱՏԱՐԵՆՔ ԿԵՐԻ ՍԻԼՈՍԱՑՈՒՄԸ, ԱՆԱՍՈՒՆՆԵՐՆ ԱՊԱՀՈՎԵՆՔ ՀՅՈՒԹԱԼԻ ԿԵՐԵՐՈՎ

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Անասնապահական մթերքների արտադրությունն ավելացնելու մասին, *զեկուցում ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի պլենումում 1955 թվականի հունվարի 25-ին, Հայպետհրատ, 1955, էջ 47—65։*

Անասնապահության շեշտակի վերելքի համար *(թվեր և փաստեր), «Ագիտատորի բլոկնոտ» № 9, 1955։*

Ա. ՄՈՒՐԱԴՅԱՆ— Կերաբույսերի բարձր բերքի ագրոտեխնիկան, *Հայպետհրատ, 1955։*

## 5. ՀԱՋՈՂՈՒԹՅԱՄԲ ԱՆՑԿԱՑՆԵՆՔ ԱՆԱՍՈՒՆՆԵՐԻ ԱՐՈՏԱՅԻՆ ՇՐՋԱՆԸ

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Անասնապահական մթերքների

արտադրությունն ավելացնելու մասին, *զեկուցում ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի պլենումում 1955 թվականի հունվարի 25-ին, Հայպետհրատ, էջ 47—72, 1955։*

Ամեն կերպ ավելացնենք գյուղատնտեսական մթերքների արտադրությունը, *«Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի առաջնորդողը, տպագրված № 5-ում։*

Բարելավենք խոտհարքներն ու արոտավայրերը, *«Ս. Հ.»-ի առաջնորդողը, տպագրված 1955 թվականի մայիսի 13-ի համարում։*

## 6. ԲԱՐՁՐ ԿԱԶՄԱԿԵՐՊՎԱԾՈՒԹՅԱՄԲ ԵՎ ՍԵՂՄ ԺԱՄԿԵՏՈՒՄ ԱՎԱՐՏԵՆՔ ԽՈՏՀՈՒՆՁԸ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու մասին ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի պլենումի որոշումը, *ընդունված 1955 թվականի հունվարի 31-ին ընկ. Ն. Ս. Խրուշչևի զեկուցման առթիվ, Հայպետհրատ, 1955։*

Մեքենա-տրակտորային կայանների աշխատանքի հետագա բարելավման միջոցառումների մասին, *ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի որոշումները, Հայպետհրատ, 1953։*

---

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

# ԻՆՉ ԿԱՐԴԱԼ

## ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՎԵՐԱԲԵՐՅԱԼ

**Մ. Ե. ՕԶՅՈՐՆԻ— Եգիպտացորենի ռեկորդային բերք.**

*Գրքի առաջաբանը գրել է ակադեմիկոս Ի. Վ. Յակուշկինը։ Գիրքը լույս է տեսել Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրության Գյուղատնտեսական պրոպագանդայի և գիտության գլխավոր վարչության հրատարակությամբ, 1.000 օրինակ տիրաժով, անվճար։*

*Գրքում Ուկրաինական ՍՍՌ Դնեպրոպետրովսկի մարզի Լեխովսկի շրջանի «Ձերվոնի պարտիզան» կոլտնտեսության օղակավար, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս, Ստալինյան մրցանակի լաուրեատ Մարկ Եվստաֆևիչ Օզյորնին պատմում է եգիպտացորենի բարձր բերք ստանալու իր աշխատանքի դրական փորձի մասին։ Նա նկարագրում է, թե ինչպիսի պայմաններ են պետք եգիպտացորենի աճման ու զարգացման համար, խորհուրդ է տալիս, թե ինչպես պետք է օգտագործել իր օղակի փորձը հողա-կլիմայական տարբեր պայմաններում։*

*Օզյորնին իր գրքում մանրամասն պատմում է նաև լավ հողամշակության, հիբրիդային սերմեր ցանելու,*

ձյունակուտակման, բույսի նկատմամբ խնամքը լավագույն ձևով կազմակերպելու և սովետական առաջավոր ագրոբիոլոգիական կանոնները լրիվ կիրառելու շնորհիվ, ինքը, 1946 թվականին, իր հայրենի Միչուրին Ռոդգյուղում, հեկտարից ստացավ 136 ցենտներ, 1948 թվականին՝ 208,6 ցենտներ, 1949 թվականին՝ 224 ցենտներ եգիպտացորեն։

Ս. ՀԱՆՈՅԱՆ— Բանջարա-բոստանային կուլտուրաների գլխավոր վնասատուները և պայքարի միջոցները նրանց դեմ: *Հայպետհրատ, 1955, 45 էջ, գինը 55 կոպեկ։*

*Բանջարա-բոստանային կուլտուրաներից բարձր բերք ստանալու նպատակով հեղինակը գրքույկում հիմնական շեշտը դնում է վնասատուների և հիվանդությունների դեմ մղվող պայքարի միջոցառումների վրա։ Ընկ. Հանոյանի գրքույկում ընթերցողը կարող է գտնել դրանց սպառիչ պատասխանները։ Բացի այդ, գրքույկում լրիվ գաղափար է տրվում նաև բանջարա-բոստանային կուլտուրաները կրծող ու ծծող վնասատուների ընդհանուր բնութագրի մասին, նշվում են պայքարի քիմիական և ագրոտեխնիկական մեթոդների առավելությունները։ Հեղինակը, փորձից ելնելով, խորհուրդ է տալիս, թե ինչպե՞ս և ի՞նչ քիմիական պրեպարատներ օգտագործելու միջոցով հնարավոր կլինի ավելի արդյունավետ պայքար մղել վնասատուների դեմ։ Գրքույկը միաժամանակ ընթերցողին մանրամասն գաղափար է տալիս՝ ե՞րբ և տարվա ո՞ր ամիսներին կատարել ցրտահերկն ու խոր վարը։*



*Գրքույկի պատկերազարդ լինելը ավելի է նպաստում նրա մատչելիությանը։*

Ռ. ԵՐԳԵՍՅԱՆ— Անջրդի այգեգործությունը Հայաստանի հյուսիս-արևելյան շրջաններում: *Հայպետհրատ, 1955, 52 էջ, գինը 60 կոպեկ։*

*Ռեսպուբլիկայի հյուսիս-արևելյան շրջանների անջրդի պայմաններում խաղողի բարձր բերքատվության հասնելու համար հեղինակը այգեգործներին ամենից առաջ խորհուրդ է տալիս, թե ինչպես ձեռք բերել ցրտին և զանազան հիվանդություններին դիմացող պատվաստակալներ, ինչպես տեսակավորել աշնանը կտրած մայթակները, ինչպես և տարվա ո՞ր ժամանակ կատարել պատվաստումը։ Բարձր բերք ստանալու նպատակով, բրոշյուրում առաջ են քաշվում նաև հողերի ընտրության, վազերի զարգացմանն ու խոնավության պահպանմանը վերաբերող հարցեր։*

*Բրոշյուրում թվարկվում են Հայաստանի հյուսիս-արևելյան այն շրջանների անունները, որտեղ տնկվելիք այգիները պետք է անհրաժեշտաբար ենթարկվեն մեքենայական մշակման։ Մանրամասնորեն նշվում են նաև անջրդի այգու առաջին տարվա խնամքի հետ կապված միջոցառումները՝ միջշարքային տարածությունների վարը կամ փորը, նրանց խորությունը, այգու պարարտացումը կալիումական, ազոտական ու ֆոսֆորական պարարտանյութերով։ Հատուկ ուշադրություն է դարձվում խոնավության պահպանման և գոլորշիացումը նվազեցնելու հարցի վրա։*

*ձյունակուտակման, բույսի նկատմամբ խնամքը լավագույն ձևով կազմակերպելու և սովետական առաջավոր ագրոբիոլոգիական կանոնները լրիվ կիրառելու շնորհիվ, ինքը, 1946 թվականին, իր հայրենի Միչուրին Ռոդ գյուղում, հեկտարից ստացավ 136 ցենտներ, 1948 թվականին՝ 208,6 ցենտներ, 1949 թվականին՝ 224 ցենտներ եգիպտացորեն։*

Ս. ՀԱՆՈՅԱՆ— Բանջարա-բոստանային կուլտուրաների գլխավոր վնասատուները և պայքարի միջոցները նրանց դեմ: *Հայպետհրատ, 1955, 45 էջ, գինը 55 կոպեկ։*

*Բանջարա-բոստանային կուլտուրաներից բարձր բերք ստանալու նպատակով հեղինակը գրքույկում հիմնական շեշտը դնում է վնասատուների և հիվանդությունների դեմ մղվող պայքարի միջոցառումների վրա։ Ընկ. Հանոյանի գրքույկում ընթերցողը կարող է գտնել դրանց սպառիչ պատասխանները։ Բացի այդ, գրքույկում լրիվ գաղափար է տրվում նաև բանջարա-բոստանային կուլտուրաները կրծող ու ծծող վնասատուների ընդհանուր բնութագրի մասին, նշվում են պայքարի քիմիական և ագրոտեխնիկական մեթոդների առավելությունները։ Հեղինակը, փորձից ելնելով, խորհուրդ է տալիս, թե ինչպե՞ս և ի՞նչ քիմիական պրեպարատներ օգտագործելու միջոցով հնարավոր կլինի ավելի արդյունավետ պայքար մղել վնասատուների դեմ։ Գրքույկը միաժամանակ ընթերցողին մանրամասն գաղափար է տալիս՝ ե՞րբ և տարվա ո՞ր ամիսներին կատարել ցրտահերկն ու խոր վարը։*



*Գրքույկի պատկերազարդ լինելը ավելի է նպաստում նրա մատչելիությանը։*

Ռ. ԵՐԳԵՍՅԱՆ— Անջրդի այգեգործությունը Հայաստանի հյուսիս-արևելյան շրջաններում: *Հայպետհրատ, 1955, 52 էջ, գինը 60 կոպեկ։*

*Ռեսպուբլիկայի հյուսիս-արևելյան շրջանների անջրդի պայմաններում խաղողի բարձր բերքատվության հասնելու համար հեղինակը այգեգործներին ամենից առաջ խորհուրդ է տալիս, թե ինչպես ձեռք բերել ցրտին և զանազան հիվանդություններին դիմացող պատվաստակալներ, ինչպես տեսակավորել աշնանը էտած մայքակները, ինչպես և տարվա ո՞ր ժամանակ կատարել պատվաստումը։ Բարձր բերք ստանալու նպատակով, բրոշյուրում առաջ են քաշվում նաև հողերի ընտրությանը, վազերի զարգացմանն ու խոնավության պահպանմանը վերաբերող հարցեր։*

*Բրոշյուրում թվարկվում են Հայաստանի հյուսիս-արևելյան այն շրջանների անունները, որտեղ տնկվելիք այգիները պետք է անհրաժեշտաբար ենթարկվեն մեքենայական մշակման։ Մանրամասնորեն նշվում են նաև անջրդի այգու առաջին տարվա խնամքի հետ կապված միջոցառումները՝ միջշարքային տարածությունների վարը կամ փորը, նրանց խորությունը, այգու պարարտացումը կալիումական, ազոտական ու ֆոսֆորական պարարտանյութերով։ Հատուկ ուշադրություն է դարձվում խոնավության պահպանման և գոլորշիացումը նվազեցնելու հարցի վրա։*

Հեղինակը առանձին գլխում խոսում է այն մասին, թե ե՞րբ, ինչպե՞ս և ի՞նչ միջոցներով պետք է կատարել այգու փխրեցումը, հոսող ջրերի ու ձյան պահպանումը, էտը, նոր տնկած այգու երկրորդ, երրորդ, չորրորդ և հետագա տարիների խնամքը։

Բրոշյուրում միաժամանակ խոսվում է ռեսպուբլիկայի Գինեգործական և Այգեգործական ինստիտուտի կողմից 1946—55 թվականներին կատարած փորձնական աշխատանքների մասին, ինչպես նաև Նոյեմբերյանի, Ալավերդու, Ծամշադինի և Իջևանի շրջանների այգեգործությամբ զբաղվող մի շարք կոլտնտեսությունների առաջավոր փորձի մասին, որոնք մեծ տարածությունների վրա յուրաքանչյուր հեկտարից ստացել են 100—160 ցենտներ խաղողի բերք։

Ս. ԽԱՉԱՏՐՅԱՆ— Բանջարա-բոստանային կուլտուրաների մշակությունը: *Հայպետհրատ, 1955, 210 էջ, գինը 2 ռ. 30 կոպեկ։*

Գիրքն ունի ընդարձակ ներածական, ուր խոսվում է այն մասին, թե ինչ հսկայական նշանակություն ունեն բանջարա-բոստանային կուլտուրաները բնակչությանը համեղ սննդանյութերով, իսկ արդյունաբերությանը՝ հումքով ապահովելու գործում։ Միաժամանակ խոսվում է նաև աշխատանքների կոմպլեքսային մեքենայացման և առաջավոր ագրոտեխնիկական եղանակների կիրառման մասին։

Գրքի առանձին բաժիններ նվիրված են այն հարցերին, թե ինչպե՞ս աճեցնել բանջարանոցային կուլտուրա-



ների սածիլները տորֆաբուսահողային թաղարներում, ե՞րբ և ինչպե՞ս կատարել այդ կուլտուրաների ցանքը, տնկումն ու մշակումը։

Խոսելով բանջարա-բոստանային կուլտուրաներից յուրաքանչյուրի (պոմիդոր, կաղամբ, սեխ, ձմերուկ, սեղանի գազար, լոբի, սոխ, ճակնդեղ և այլն) բիոլոգիական առանձնահատկությունների, տեսակների ու սերմնաբուծության մասին, գրքի հեղինակը միաժամանակ մանրամասնորեն պատմում է, թե ինչպե՞ս և ինչի՞ց են նրանց մոտ առաջ գալիս զանազան հիվանդություններ, ինչպե՞ս և ի՞նչ միջոցներով պետք է այդ կուլտուրաները պահպանել հիվանդություններից։

Գրքի գրեթե բոլոր էջերը պատկերազարդ են, որոնք պարզաբանում ու ավելի տպավորիչ են դարձնում շարադրված նյութը։

Հ. ԲԱՏԻԿՅԱՆ, Դ. ԶՈԼԱԽՅԱՆ— Ագրոբիոլոգիական գիտության նվաճումները Հայկական ՍՍՌ-ում: *Երևանի պետական համալսարանի հրատարակչություն, 1955, 138 էջ, գինը 2 ռ. 70 կոպեկ։*

Այս աշխատության հեղինակները, հիմք ընդունելով մատերիալիստական բիոլոգիայի կորիֆեյներ Դարվինի և Միչուրինի գոյության պայմանների փոփոխության, շրջապատող միջավայրի ազդեցության ու ժառանգականության փոխանցման մասին ուսմունքը, ընթերցողներին պատմում են սովետական ագրոբիոլոգիական գիտության գծով հատկապես վերջին տարիներս ձեռք բերված նվաճումների մասին։





Գրքում խրախուսվում է գյուղատնտեսական գիտությունների թեկնածու Բ. Գարասեֆերյանի այն օգտակար աշխատանքը, որ նա կատարել է ցորենի նոր՝ «Արմյանկա» սորտ աճեցնելու ուղղությամբ, որը խիստ ցրտադիմացկուն է ու բարձր բերքատու։ Խրախուսանքի են արժանանում նաև «Արտաշատի 42» և «Եղվարդ 4» ցորենի նոր տեսակներ ստեղծողները։

Ագրոքիմիայի ենթաբաժնում, գրքի հեղինակները պատմում են գիտական այն ուսումնասիրությունների մասին, որոնք լավագույն արդյունք են տվել ցորենից, կարտոֆիլից, բամբակից և այլ կուլտուրաներից ավելի բարձր բերք ստանալու գործում։

Գրքում առաջին պլանի վրա են քաշվում մեծ ապագա խոստացող ռադիոակտիվ իզոտոպների օգնությամբ բույսերի բերքատվությունը արհեստականորեն բարձրացնելու ուղղությամբ Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի սեկտորի աշխատողների կողմից կատարված ուսումնասիրությունները։

Առանձին էջեր պատմում են այն մասին, թե ինչպես ռեսպուբլիկայի գյուղատնտեսական գիտության մի շարք նովատորներ իրենց համոզիչ ու համարձակ փորձերով կարողացել են պտղատու ծառերից, խաղողից, տանձից, խոտաբույսերից, պոմիդորից հիբրիդացման ու հողակլիմայական պայմանների լավացման շնորհիվ ստանալ բարձր բերք։

Անասնապահության ենթաբաժնում խրախուսվում են այն առաջավոր մեթոդները, որոնք գործադրվել են



Ստեփանավանի շրջանի Լոռվա տոհմաբուծական սովխոզի, Նոր Բայազետի շրջանի Սարուխանյանի անվան կոլտնտեսության և մյուս սովխոզների ու կոլտնտեսությունների կողմից, բարձր մթերատվության հասնելու ու ցեղն ազնվացնելու նպատակով։

---

## СОДЕРЖАНИЕ



Խմբագիր՝ ԳՐ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

Отдел Пропаганды и агитации
ЦК КП Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 11 1955 г.

ՎՖ 11098 Պատվեր 498 Տիրաժ 8200

---

ՀՍՍՌ Կուլտ. մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության № 2 տպարան, Երևան, Կնունյանցի № 8, 1955 թ., գինը 50 կոպ.։